Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (28)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

1945

Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք!

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (28)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Հրաման Գերագույն Գլխավոր Հրամանատարի 1 մայիսի 1945 թ. № 20 ք. Մոսկվա — 3
2. Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ դիմումը ժողովրդին — 13
3. Հրաման Գերագույն Գլխավոր Հրամանատարի Կարմիր Բանակի զորքերին և ռազմա-ծովային նավատորմին — 17
4. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը. Մայիսի 9-ը հաղթանակի տոն հայտարարելու մասին — 19



# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

1 ՄԱՅԻՍԻ 1945 Թ. № 20 Ք. ՄՈՍԿՎԱ

*Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր, բանակի ու նավատորմի սպանե՛ր, գեներալնե՛ր ու ադմիրալնե՛ր:*

*Սովետական Միության աշխատավորնե՛ր:*

*Այսօր մեր երկիրը տոնում է Մայիսի Մեկը՝ աշխատավորության միջազգային տոնը:*

*Այս տարի մեր Հայրենիքի ժողովուրդները Մայիսի Մեկի օրը դիմավորում են Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտման իրադրության մեջ:*

*Անցան ու այլևս չեն վերադառնա ծանր ժամանակները, երբ Կարմիր բանակը թշնամու զորքերին ետ էր մղում Մոսկվայի ու Լենինգրադի տակ, Գրոզնու և Ստալինգրադի տակ: Ներկայումս մեր հաղթական զորքերը հակառակորդի զինված ուժերին ջախջա-*

խում են Գերմանիայի կենտրոնում, Բեռլինից չատ այն կողմը, Էլբա գետի ափերին:

Կարճ ժամանակամիջոցում ազատագրվեցին Լեհաստանը, Հունգարիան, Չեխոսլովակիայի մեծ մասը, Ավստրիայի զգալի մասը, Ավստրիայի մայրաքաղաքը՝ Վիեննան:

Կարմիր Բանակը միաժամանակ գրավեց Արևելյան Պրուսիան՝ գերմանական իմպերիալիզմի բույնը, Պոմերանիան, Բրանդենբուրգի մեծ մասը և Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինի գլխավոր ռայոնները, Բեռլինի վրա բարձրացնելով հաղթանակի դրոշը:

Կարմիր Բանակի այս հարձակողական մարտերի հետևանքով գերմանացիները երեք-չորս ամսվա ընթացքում կորցրին ավելի քան 800.000 զինվոր ու սպա գերի ընկած և մոտ մեկ միլիոն սպանված: Այդ նույն ժամանակամիջոցում Կարմիր Բանակի զորամասերը գրավեցին ու ոչնչացրին թշնամու մոտ 6.000 ինքնաթիռ, մոտ 12.000 տանկ և ինքնագնաց հրանոթ, ավելի քան 23.000 դաշտային հրանոթ և հսկայական քանակությամբ այլ տեսակի սպառազինություն ու հանդերձանք:

Պետք է նշել, որ այս մարտերում ընդհանուր թշնամու վրա Կարմիր Բանակի հետ կողք-կողքի հաջողությամբ հարձակվում էին լեհական, հարավսլավյան, չեխոսլովակյան, բուլղարական և ռումինական դիվիզիաները:



Կարմիր Բանակի խորտակիչ հարվածների հետևանքով գերմանական հրամանատարությունը հարկադրված էր տասնյակ դիվիզիաներ նետել սովետա-գերմանական ռազմաճակատ, մերկացնելով մյուս ռազմաճակատների ամբողջ հատվածներ: Այդ հանգամանքը մեր դաշնակիցների զորքերին օգնեց հաջող հարձակում ծավալելու արևմուտքում: Ըստ որում արևելքից և արևմուտքից գերմանական զորքերին միաժամանակ հարվածներ հասցնելու միջոցով դաշնակիցների և Կարմիր Բանակի զորքերին հաջողվեց գերմանական զորքերը հատել երկու, միմյանցից կտրված մասերի և իրագործել մեր ու դաշնակից զորքերի միացումը, կազմելով միասնական ճակատ:

Տարակույս չի կարող լինել, որ այդ հանգամանքը նշանակում է հիտլերյան Գերմանիայի վախճանը:

Հիտլերյան Գերմանիայի օրերը հաշված են: Նրա տերիտորիայի կեսից ավելին գրավված է Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների զորքերի կողմից: Գերմանիան զրկվել է կենսականորեն կարևորագույն շրջաններից: Հիտլերականների ձեռքին մնացած արդյունաբերությունը չի կարող գերմանական բանակին մատակարարել բավականաչափ սպառազինություն, ռազմամթերք և վառելանյութ:

Գերմանական բանակի մարդկային ռեզերվները սպառված են: Գերմանիան ամբողջովին մեկուսացված է և մնացել է միայնակ, եթե չհաշվենք նրա դաշնակից Ճապոնիային:

Իրենց անհուսալի դրությունից ելք որոնելու մեջ հիտլերյան ավանտյուրիստները դիմում են ամեն տեսակ ֆոկուսների, ընդհուպ մինչև խաղեր խաղալու դաշնակիցների հետ, ձգտելով պառակտում առաջ բերել դաշնակիցների լագերում: Հիտլերականների այդ նոր խարդախ տրյուկները դատապարտված են լիակատար ձախողման: Դրանք կարող են միայն արագացնել գերմանական զորքերի խորտակումը:

Ֆաշիստական ստահոդ պրոպագանդան գերմանական բնակչությանը վախեցնում է անհեթեթ բարբաջանքներով, թե իբր Միավորված Ազգերի բանակները ուզում են բնաջնջել գերմանական ժողովուրդը: Միավորված Ազգերի խնդիրը չէ գերմանական ժողովրդի ոչնչացումը: Միավորված Ազգերը կոչնչացնեն ֆաշիզմն ու գերմանական միլիտարիզմը, անողոքաբար կպատժեն պատերազմի հանցագործներին և գերմանացիներին կստիպեն հատուցելու այն վնասը, որ նրանք պատճառել են մյուս երկրներին: Սակայն Միավորված Ազգերը ձեռք չեն տալիս և ձեռք չեն տա Գերմանիայի խաղաղ բնակչությանը, եթե



նա լոյալ կերպով կատարի դաշնակից զինվորական իշխանությունների պահանջները:

Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում սովետական զորքերի տարած փայլուն հաղթանակները ցույց տվին Կարմիր Բանակի դյուցազնական ուժը և նրա զինվորական բարձր վարպետությունը: Մեր Հայրենիքը պատերազմի ընթացքում ստացավ առաջնակարգ կադրային բանակ՝ ընդունակ պաշտպանելու մեր ժողովրդի սոցիալիստական մեծ նվաճումները և ապահովելու Սովետական Միության պետական շահերը:

Չնայած որ Սովետական Միությունը համարյա չորս տարի մղում է վիթխարի ծախսեր պահանջող, իր մասշտաբով չտեսնված պատերազմ, մեր սոցիալիստական էկոնոմիկան ամրապնդվում է ու աճում, իսկ ազատագրված մարզերի տնտեսությունը, որ կողոպտել ու ավերել էին գերմանական զավթիչները, հաջողությամբ և արագորեն վերածնվում է: Դա բոլշևիկյան մեծ պարտիայի կողմից ոգեշնչվող և ղեկավարվող մեր երկրի բանվորների ու կոլխոզնիկների, սովետական ինտելիգենցիայի, կանանց ու երիտասարդության հերոսական ջանքերի արդյունքն է:

Գերմանական իմպերիալիստների հրահրած համաշխարհային պատերազմը մոտենում է իր վախճանին: Հիտլերյան Գերմա-

նիայի խորտակումը ամենամոտիկ ապագայի գործ է: Հիտլերյան պարագլուխները, որոնք իրենց երևակայում էին աշխարհի տերեր, կանգնեցին կոտրած տաշտակի առաջ: Մահացու վիրավորված ֆաշիստական գազանը վերջին շունչն է փչում: Խնդիրն այժմ հանգում է մեկ բանի՝ վերջ տալ ֆաշիստական գազանին:

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՌԱԶՄԻԿՆԵ՛Ր.

Վերջին գրոհն է կատարվում հիտլերյան որջի վրա: Եզրափակիչ մարտերում ցո՛ւյց տվեք զինվորական հմտության և խիզախության նորանոր օրինակներ: Ավելի ամո՛ւր խփեցեք թշնամուն, հմտորեն խորտակեցե՛ք նրա պաշտպանությունը, հետապնդեցեք և շրջապատեցե՛ք գերմանական զավթիչներին, հանգիստ մի՛ տվեք նրանց, մինչև նրանք չդադարեցնեն դիմադրությունը:

Գտնվելով հայրենի հողի սահմաններից այն կողմը, եղեք առանձնապես զգաստ:

Առաջվա նման բարձր պահեցեք սովետական ռազմիկի պատիվն ու արժանավորությունը:



## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵ՛Ր.

Համառ և անխոնջ աշխատանքով բազմապատկեցե՛ք բազմակողմանի օգնությունը ռազմաճակատին: Արագ բուժեցեք այն վերքերը, որ պատերազմը հասցրել է երկրին, է՛լ ավելի բարձրացրեք մեր սովետական պետության հզորությունը:

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր ու ավագնե՛ր, բանակի և նավատորմի սպանե՛ր, գեներալնե՛ր ու ադմիրալնե՛ր:

Սովետական Միության աշխատավորնե՛ր:

Սովետական Կառավարության և մեր բոլշևիկյան պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ Ձեզ Մայիսի Մեկի օրվա առթիվ:

Ի պատիվ ռազմաճակատում Կարմիր Բանակի տարած պատմական հաղթանակների և թիկունքում բանվորների, կոլխոզնիկների ու ինտելիգենցիայի ձեռք բերած մեծ հաջողությունների, ի նշանավորումն աշխատավորության միջազգային տոնի

## ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ

Այսօր, Մայիսի Մեկին, հրետանային քսան համազարկով սալյուտ տալ միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում՝

Մոսկվայում, Կիևում, Մինսկում, Բաքվում, Թբիլիսիում, Երևանում, Աշխաբադում, Տաշկենտում, Ստալինաբադում, Ալմա-Աթայում, Ֆրունզեում, Պետրոզավոդսկում, Քիշնեվում, Վիլնյուսում, Ռիգայում, Տալլինում, ինչպես նաև հերոս-քաղաքներ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստոպոլում և Օդեսայում։

Կեցցե՛ մեր հզոր Սովետական Հայրենիքը։

Կեցցե՛ Սովետական մեծ ժողովուրդը, հաղթող ժողովուրդը։

Կեցցե՛ն հաղթական Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։

Հավե՛րժ փառք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող մարտերում զոհված հերոսներին։

Առա՛ջ, դեպի հիտլերյան Գերմանիայի վերջնական ջախջախումը։

ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ<br>ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ<br>**Ի. ՍՏԱԼԻՆ**

---

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԴԻՄՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Ընկերնե՛ր, հայրենակիցնե՛ր և հայրենակուհինե՛ր։

Հասավ Գերմանիայի դեմ հաղթանակի մեծ օրը։ Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների զորքերի կողմից ծունկի բերված ֆաշիստական Գերմանիան իրեն պարտված ճանաչեց և անվերապահ կապիտուլյացիա հայտարարեց։

Մայիսի 7-ին Ռեյմս քաղաքում ստորագրվեց կապիտուլյացիայի նախնական արձանագրությունը։ Մայիսի 8-ին գերմանական գլխավոր հրամանատարության ներկայացուցիչները, դաշնակից զորքերի Գերագույն Հրամանատարության և սովետական զորքերի Գերագույն Գլխավոր Հրամանատարության ներկայացուցիչների ներկայությամբ Բեռլինում ստորագրեցին կապիտուլյացիայի վերջնական ակտը, որի կատարումը սկսվեց մայիսի 8-ի ժամը 24-ից։

Գիտենալով գերմանական պարագլուխների գայլային սովորությունը, որոնք պայմանագրերը և համաձայնագրերը համարում են դատարկ թուղթ, մենք հիմք չունենք հավատալու նրանց խոսքին: Սակայն այսօր առավոտվանից գերմանական զորքերը, ի կատարումն կապիտուլյացիայի ակտի, սկսեցին մասսայաբար զենքը ցած դնել և գերի հանձնվել մեր զորքերին: Դա արդեն դատարկ թուղթ չէ: Դա Գերմանիայի զինված ուժերի իսկական կապիտուլյացիա է: Ճիշտ է, գերմանական զորքերի մի խումբ Չեխոսլովակիայի շրջանում դեռևս խուսափում է կապիտուլյացիայից: Սակայն ես հույս ունեմ, որ Կարմիր Բանակին կհաջողվի խելքի բերել նրան:

Այժմ մենք կարող ենք լիակատար հիմք ունենալով հայտարարել, որ հասել է Գերմանիայի վերջնական ջախջախման պատմական օրը, գերմանական իմպերիալիզմի դեմ մեր ժողովրդի տարած մեծ հաղթանակի օրը:

Մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մեր մեծ զոհաբերությունները, պատերազմի ընթացքում մեր ժողովրդի կրած անթիվ–անհամար զրկանքներն ու տառապանքները, Հայրենիքի զոհասեղանին



նվիրված լարված աշխատանքը թիկունքում և ռազմաճակատում՝ ապարդյուն չանցան և պսակվեցին լիակատար հաղթանակով ընդդեմ թշնամու: Իրենց գոյության և իրենց անկախության համար սլավոնական ժողովուրդների մղած դարավոր պայքարը վերջացավ հաղթանակով ընդդեմ գերմանական զավթիչների և գերմանական բռնապետության:

Այժմվանից Եվրոպայի վրա կծածանվի ժողովուրդների ազատության և ժողովուրդների միջև խաղաղության մեծ դրոշը:

Երեք տարի առաջ Հիտլերը ի լուր ամենքի հայտարարեց, որ նրա խնդիրն է՝ անդամահատել Սովետական Միությունը և նրանից անջատել Կովկասը, Ուկրաինան, Բելոռուսիան, Մերձբալթիկան և այլ մարզեր: Նա ուղղակի հայտարարեց՝ «Մենք կոչնչացնենք Ռուսաստանը, որ նա այլևս երբեք չկարողանա ոտքի կանգնել»: Դա երեք տարի առաջ էր: Սակայն Հիտլերի խելացնոր իդեաներին վիճակված չէր իրականանալ — պատերազմի ընթացքը հողմացրիվ արեց դրանք: Գործնականում ստացվեց ինչ-որ ուղղակի հակառակը այն բանի, ինչ զառանցում էին հիտլերականները: Գերմանիան գլխովին ջախ-

ջախջախված է: Գերմանական զորքերը կապիտուլյացիայի են ենթարկվում: Սովետական Միությունը տոնում է հաղթանակը, թեև նա չի էլ պատրաստվում ո՛չ անդամահատել, ո՛չ ոչնչացնել Գերմանիան:

Ընկերնե՛ր: Հայրենական մեծ պատերազմը ավարտվեց մեր լիակատար հաղթանակով: Պատերազմի ժամանակաշրջանը Եվրոպայում վերջացավ: Սկսվեց խաղաղ զարգացման ժամանակաշրջանը:

Շնորհավորում եմ ձեզ հաղթանակի առթիվ, իմ թանկագին հայրենակիցնե՛ր և հայրենակցուհինե՛ր:

Փա՛ռք մեր հերոսական Կարմիր Բանակին, որ պաշտպանեց մեր Հայրենիքի անկախությունը և հաղթանակ նվաճեց թշնամու դեմ:

Փա՛ռք մեր մեծ ժողովրդին, հաղթող ժողովրդին:

Հավե՛րժ փառք թշնամու դեմ մղված մարտերում զոհված և իրենց կյանքը մեր ժողովրդի ազատության և երջանկության համար նվիրաբերած հերոսներին:

---



# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԶՈՐՔԵՐԻՆ ԵՎ ՌԱԶՄԱԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻՆ

1945 թվի մայիսի 8-ին Բեռլինում գերմանական գերագույն հրամանատարության ներկայացուցիչները ստորագրել են գերմանական զինված ուժերի անվերապահ կապիտուլյացիայի ակտը:

Հայրենական մեծ պատերազմը, որ սովետական ժողովուրդը մղում էր գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ, հաղթականորեն ավարտվեց: Գերմանիան ամբողջովին ջախջախվեց:

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր, կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, ավագնե՛ր, բանակի ու նավատորմի սպանե՛ր, գեներալնե՛ր, ադմիրալնե՛ր և մարշալնե՛ր, շնորհավորում եմ ձեզ Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտման առթիվ:

Ի նշանավորումն Գերմանիայի դեմ տարած լիակատար հաղթանակի, այսօր, մայիսի 9-ին, Հաղթանակի Օրը ժամը 22-ին, մեր Հայրենիքի մայրաքաղաք ՄՈՍԿՎԱՆ Հայրենիքի անունից ողջունում է այդ փայլուն հաղթանակը տարած Կարմիր Բանակի քաջարի զորքերին, Ռազմա-Ծովային Նավատորմի նավերին ու զորամասերին հազար հրանոթի հրետանային երեսուն համազարկով:

Հավե՜րժ փառք մեր Հայրենիքի ազատության ու անկախության համար մղված մարտերում զոհված հերոսներին:

Կեցցե՜ն հաղթական Կարմիր Բանակն ու Ռազմա-Ծովային Նավատորմը:

ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ **Ի. ՍՏԱԼԻՆ**

9 մայիսի, 1945 թ. № 369



ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

## ՄԱՅԻՍԻ 9-Ը ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ի նշանավորումն գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտման և Կարմիր Բանակի տարած պատմական հաղթանակների, որոնք պսակվեցին անվերապահ կապիտուլյացիա հայտարարած Հիտլերյան Գերմանիայի լիակատար ջախջախմամբ, սահմանել, որ մայիսի 9-ը հանդիսանում է համաժողովրդական ցնծության օր՝ հաղթանակի տոն:

Մայիսի 9-ը համարել ոչ-աշխատանքային օր:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
Նախագահ Մ. ԿԱԼԻՆԻՆ
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
Քարտուղար Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ, 8 մայիսի 1945 թ.

